Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

**Խմբագրության հասցեն.**— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։



## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԵՆ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Ավարտվում է տնտեսական տարին։ Կենսագործելով Հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության պատմական որոշումները ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավման մասին, ռեսպուբլիկայի աշխատավորները նոր հաջողություններով են եզրափակում տնտեսական հին տարին և մեծ հաջողություններով դիմավորում նոր տարին։ Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները անընդհատ ավելացնում են ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը և բարելավում նրանց որակը։ Տասնյակ ձեռնարկություններ տարեկան արտադրական պլանները կատարեցին ժամկետից մեկ ամիս շուտ և երկրին պլանից դուրս տվեցին միլիոնավոր ռուբլու արտադրանք։

Այս տարի ռեսպուբլիկայի արդյունաբե-

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։



## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԵՆ ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Ավարտվում է տնտեսական տարին։ Կենսագործելով Հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության պատմական որոշումները ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավման մասին, ռեսպուբլիկայի աշխատավորները նոր հաջողություններով են եզրափակում տնտեսական հին տարին և մեծ հաջողություններով դիմավորում նոր տարին։ Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները անընդհատ ավելացնում են ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը և բարելավում նրանց որակը։ Տասնյակ ձեռնարկություններ տարեկան արտադրական պլանները կատարեցին ժամկետից մեկ ամիս շուտ և երկրին պլանից դուրս տվեցին միլիոնավոր ռուբլու արտադրանք։

Այս տարի ռեսպուբլիկայի արդյունաբե-





րական ձեռնարկությունները, 1950 թվականի համեմատությամբ ավելի քան մեկ ու կես անգամ շատ արտադրանք են թողարկել և ավելի քան 3,6 անգամ շատ, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Վիթխարի հաջողություններ են ձեռք բերված լայն սպառման արդյունաբերական և պարենային ապրանքների արտադրության ավելացնելու ուղղությամբ։ Այս տարի, նախորդ տարիների համեմատությամբ արդեն մի քանի անգամ ավելացել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Այսպես, օրինակ, 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոշկեղենի արտադրությունն աճել է 3 անգամ, տրիկոտաժինը՝ 4,2 անգամ, գուլպեղենինը՝ 2 անգամ, փորձեղենինը՝ 3 անգամ, մահճակալներինը՝ 7 անգամ, պահածոներինը՝ 2,5 անգամ, մսինը՝ 1,6 անգամ, գինունը՝ 1,8 անգամ, ծխախոտինը՝ 4,8 անգամ և այլն։

Վերջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայում կառուցվեցին միտաքսյա և բրդյա կտորեղենի արտադրության մի շարք ձեռնարկություններ, որոնք հաջողությամբ գործարկվեցին և արդեն երկրին տալիս են բարձրորակ արտադրանք, ինչպես, օրինակ,



«Կրեպժորժետ», «Մոսկրեպ», «Կրեպհոկտեմբեր», բոստոն, մահուդ և շատ այլ տեսակի նուրբ ու թանկարժեք կտորեղեն։ Բրդյա և մետաքսյա կտորեղենի թողարկումը 1953 թվականին ավելացել է ավելի քան 2 անգամ։

Ռեսպուբլիկայում բուռն թափով զարգանում են ծանր ինդուստրիայի այնպիսի ճյուղեր, ինչպիսին են գունավոր մետալուրգիան, քիմիական և մեքենաշինական արդյունաբերությունը, որոնց արտադրանքը տարեցտարի ավելանում է։ Մեր ռեսպուբլիկայի ձեռնարկությունները թողարկում են ժողովրդական տնտեսության համար այնպիսի կարևոր արտադրանք, ինչպիսին է սինթետիկ կաուչուկը, կաուստիկ սոդան, պղնձաթթոն ու պղնձարջասպը, հանքային պարարտանյութերը, գունավոր մետաղ, կարբելային իրեր, գեներատորներ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, մետաղահատ դազգահներ, շինանյութեր և այլն։

Ռեսպուբլիկայի գործարաններն ու ֆաբրիկաները հագեցվում են նորագույն տեխնիկայով, արմատավորում են գիտության նվաճումները, առաջավոր փորձը։ Այդ բոլորի շնորհիվ հեշտացել է բանվորի աշխատանքը, բարձրացել է նրա աշխատանքի արտա-

դրողականությունը։ Ներկայումս ռեսպուբլիկայի ձեռնարկությունները մի քանի օրվա ընթացքում արդյունաբերական այնքան արտադրանք են թողարկում, որքան թողարկվել է Հայաստանում 1913 թվականին։

Աչքի ընկնող հաջողությունների են հասել գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները։ Կոլտնտեսություններում, մեքենա-տրակտորային կայաններում և սովխոզներում եռանդուն աշխատանք է կատարվում ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը լրիվ կենսագործելու համար։ Պարտիայի և կառավարության հոգատարության շնորհիվ կոլտնտեսությունները ամրապնդվում են տնտեսապես և կազմակերպչորեն։ Տարեցտարի ավելանում են նրանց դրամական ու մթերային եկամուտները։ Ոռոգման խոշոր ջրանցքների կառուցման, հանքային պարարտանյութերի լայն կիրառման, գյուղատնտեսական աշխատանքների աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ անընդհատ բարձրանում է մշակվող կուլտուրաների բերքատվությունը։

Այս տարի ավելի ընդարձակվեց և ամրապնդվեց գյուղատնտեսության տեխնիկական բազան։ Մեքենա-տրակտորային կայանների կարողությունը, 1940 թվականի



համեմատությամբ ավելացել է 2,7 անգամ, իսկ կոմբայնների թիվը՝ ավելի քան 2 անգամ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հաջողությամբ գործում են բամբակահավաք մեքենաներ, ինքնագնաց կոմբայններ և այլն։ Այս տարի մեքենա-տրակտորային կայանները 4 անգամ ավելի շատ գյուղատնտեսական աշխատանք են կատարել, քան կատարում էին 1940 թվականին։ Վարի աշխատանքը մեքենայացված է 73 տոկոսով, հացահատիկային կուլտուրաների ցանքինը՝ 50 տոկոսով, բամբակի ու ճակնդեղի ցանքինը՝ 100 տոկոսով, ճակնդեղի բերքահավաքինը՝ 62 տոկոսով և այլն։

Ռեսպուբլիկայի աշխատավորները 1953 թվականը նոր հաջողություններով են փակում նաև ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացման բնագավառում։ Ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանների և կոլտնտեսությունների մոտ 80 տոկոսը էլեկտրիֆիկացված է։ Անասնապահական շատ աշխատանքներ, ինչպիսին է կովերի կիթը, ոչխարների խուզը, կերերի մշակումն ու տեղափոխումը և բազմաթիվ այլ աշխատանքներ կատարվում են էլեկտրաէներգիայի միջոցով։

Ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի ար-

տադրության ավելացումը լայն հնարավորություններ է ստեղծում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի հետագա հզոր զարգացման գործում։ Փայլուն հեռանկարներ են բացվում գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության, մեքենաշինության և արդյունաբերության մյուս ճյուղերի առաջ, որոնց հիմքն է կազմում տեղական հումքի հարուստ պաշարների օգտագործումը։ Էլեկտրաէներգիայի բազայի վրա հինգերորդ հնգամյակի վերջերին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը, 1952 թվականի համեմատությամբ, կաճի մոտավորապես 60 տոկոսով, պարենամթերքի և լայն սպառման ապրանքների արտադրությունը՝ 76 տոկոսով։

Խոշոր աշխատանք է կատարված աշխատավորների նյութական-կենցաղային պայմանները բարելավելու ուղղությամբ։ Այս տարի նորից մեծ չափերով բարձրացավ բանվորների, ծառայողների ռեալ աշխատավարձը, կոլտնտեսականների եկամուտները, որն արդյունք է աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման, արդյունաբերական և պարենային ապրանքների գների սիստեմատիկ իջեցման։



Պարտիան ու կառավարությունը հետևողականորեն կիրառում են գների սիստեմատիկ իջեցման քաղաքականություն։ 1953 թվականին 1950 թվականի համեմատությամբ ապրանքաշրջանառությունը ավելացել է 37 տոկոսով, 1952 թվականի համեմատությամբ՝ 20 տոկոսով։ 1952 թվականի համեմատությամբ մսի վաճառքն ավելացել է ավելի քան 80 տոկոսով, երշիկեղենինը՝ 32 տոկոսով, ձկնեղենինը՝ 62 տոկոսով, կենդանական յուղինը՝ 41 տոկոսով, կաթինը և կաթնամթերքինը՝ 32 տոկոսով, կարած հագուստեղենինը՝ 65 տոկոսով, բամբակյա և մետաքսյա կտորեղենինը՝ 65 տոկոսով և այլն։

Այս տարի զգալի չափով բարելավվեցին աշխատավորների բնակարանային պայմանները։ Կառուցվեց և շահագործման հանձնվեց 1,5 անգամ ավելի բնակելի տարածություն, քան 1952 թվականին։ Բնակարանային մեծ շինարարություն է ծավալվելու առաջիկա տարում։

Պարտիան ու կառավարությունը անդադրում հոգ են տանում, որպեսզի սովետական մարդիկ ապրեն ավելի բարեկեցիկ և ավելի ուրախ ու երջանիկ կյանքով։

Ռեսպուբլիկայի աշխատավորները Նոր տարին դիմավորում են նոր հաջողություններով։

---

# ՎՅԵՏՆԱՄԻ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱԿՏԻՎ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐԸ

*Ի. ՊՈԴԿՈՊԱԵՎ*

*Այս տարվա հոկտեմբերի կեսերին Վիեննայում կայացած Պրոֆմիությունների համաշխարհային երրորդ կոնգրեսի որոշմամբ դեկտեմբերի 19-ը հայտարարվեց Վյետնամի ժողովրդի հետ Միջազգային ակտիվ համերաշխության օր, Վյետնամում գաղութային պատերազմը դադարեցնելու պայքարի օր։*

*Կոնգրեսի որոշումը վկայում է, որ ամբողջ աշխարհի աշխատավորները համերաշխ են պայքարող Վյետնամի հետ։ Այդ որոշումը մեծ գոհունակությամբ ընդունվեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում։ Դեկտեմբերի 19-ը Վյետնամի համար պատմական օր է. յոթ տարի առաջ, 1946 թվականին նույն օրը, ռեսպուբլիկայի կառավարությունը կոչ արեց ժողովրդին՝ սրբազան*



*պայքարի ելնել հայրենիքի ազատության և անկախության համար, ընդդեմ ֆրանսիական ուխտադրուժ իմպերիալիստների։ Այդ պահից իվեր, ամեն տարի դեկտեմբերի 19-ը Վյետնամում նշվում է որպես Վյետնամի ժողովրդի ազգային դիմադրության օր, որպես փառապանծ տոն։*

*Վյետնամը անկախ ռեսպուբլիկա հռչակվեց 1945 թվականի սեպտեմբերի 2-ին։ Բայց 3 շաբաթ հետո, ֆրանսիական և անգլիական իմպերիալիստները իրենց զորքերը մտցրեցին Վյետնամ և սկսեցին զավթողական պատերազմ։ Ռեսպուբլիկայի երիտասարդ, հենց նոր կազմակերպված զինված ուժերը, չնայած իրենց հերոսությանը, չկարողացան դիմադրել ինտերվենտներին, որոնք ունեին հսկայական թվական գերակշռություն և սպառազինության առավելություն։ 1945 թվականի վերջերին օկուպանտները ամրացան Սայգոնում և սկսեցին աստիճանաբար շարժվել դեպի երկրի հյուսիսը։ Սակայն շուտով լայնորեն ծավալված պարտիզանական պատերազմի շնորհիվ ինտերվենտների հարձակումը կասեցվեց։ Այն ժամանակ ֆրանսիական հրամանատարությունը դիմեց խորամանկության։ Նրանք Խո Շի Մինի կառավարությանը առաջարկեցին համաձայնա-*

գիր կնքելու համար բանակցությունները սկսել, այդ կերպ հույս ունենալով ժամանակ շահել, որպեսզի ավելի լայն մասշտաբով նախապատրաստվեն գաղութային պատերազմին։

1946 թվականի մարտի 6-ին կնքվեց համաձայնագիր, ըստ որի Ֆրանսիան Վյետնամին ճանաչեց որպես ազատ պետություն՝ իր կառավարությամբ, պառլամենտով, բանակով և ֆինանսներով։ Բայց, չնայած ռազմական գործողությունները դադարեցնելու վերաբերյալ համաձայնագրի հատուկ կետին, ֆրանսիական իմպերիալիստները շարունակեցին հարձակումը և պրովոկացիան։

Համոզված լինելով ֆրանսիական գաղութարարների ուխտադրժությանը, Վյետնամի ժողովուրդները է՛լ ավելի ուժեղացրին դիմադրությունը, ավելի համառորեն շարունակեցին պայքարը անկախության համար։ Այն ժամանակ ֆրանսիական գաղութարարները կրկին դիմեցին բանակցությունների։ 1946 թվականի սեպտեմբերի 14-ին, Ֆոնտենբլոյում (Փարիզի մոտ) նրանք ստորագրեցին նոր ժամանակավոր համաձայնագիր, այսպես կոչված «մոդուս վիվենդի», որով հաստատվում էր Վյետնամի անկախությունը և



նախատեսվում էր 1947 թվականի հունվարի 1-ից ոչ ուշ սկսել բանակցությունները։

Այսպիսով Ֆրանսիան երկու անգամ ճանաչեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան որպես անկախ պետություն։ Սակայն ֆրանսիական գաղութարարները ուխտադրժորեն խախտեցին այդ համաձայնագրերը։

1946 թվականի դեկտեմբերի 19-ի երեկոյան ֆրանսիական զորքերը Վյետնամի մայրաքաղաք Խանոյի տարբեր փողոցներում պրովոկացիոն միջադեպեր սարքեցին և գրավեցին հասարակական մի շարք շենքեր։ Բնակչությունը և ժողովրդական բանակի զորամասերը ստիպված եղան պաշտպանվել, դիմադրություն ցույց տալ։ Կառավարությունը դիմեց ժողովրդին, կոչ անելով համազգային դիմադրություն ցույց տալ ագրեսորին, որը կապիտուլյացիայի ուլտիմատում էր ներկայացրել։ Այսպես, 1946 թվականի դեկտեմբերի 19-ը դարձավ օտարերկրյա ստրկացնողների դեմ Վյետնամի ժողովրդի ընդհանուր ելույթի օր։

Ֆրանսիական գաղութարարները պատերազմ հրահրելով, իրենց հաշիվները կառուցել էին հեշտ, կայծակնային հաղթանակի վրա։ 1947 թվականի վերջին նրանք սկսե-

ցին հարձակումը լեռնային Վիեր-Բակ (Հյուսիսային Վյետնամ) շրջանի վրա, բայց պարտություն կրեցին և ստիպված եղան խայտառակ նահանջ կատարել։

Երեք տարի անց, 1950 թվականի աշնանը, Ժողովրդական բանակը հակահարձակման անցնելով, թշնամուն դուրս քշեց ստրատեգիական կարևորագույն նշանակություն ունեցող մի շարք կետերից, համարյա մաքրելով ամբողջ Վյետնամ-չինական սահմանը։ Դրանով Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան հեշտացրեց իր քաղաքական և տնտեսական կապերի զարգացումը բարեկամ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ։

1951 թվականի վերջերին և 1952 թվականի սկզբներին Ժողովրդական բանակը վիժեցրեց թշնամու ձեռնարկած հարձակումը Խաո-Բինյա (Հյուսիսային Վյետնամ) շրջանում և կենդանի ուժի ու տեխնիկայի մեծ կորուստ պատճառեց նրան։

1952 թվականի վերջերին Ժողովրդական բանակը հարձակման անցավ Հյուսիս-Արևմտյան Վյետնամում և ազատագրեց 250 հազար բնակչություն ունեցող մի ընդարձակ շրջան։

Ժողովրդական բանակի մարտական գոր-



ծողությունները հաջողությամբ ծավալվեցին այս տարի։ Կենտրոնական Վյետնամում Ժողովրդական բանակի զորամասերը խոշոր հաղթանակ տարան Ան-Խեում և վիժեցրին Ցան-Տիեռ և Կոնտում-Նգայ գավառների վայրերը զավթելու մի շարք գործողություններ։ Հարավային Վյետնամում Վյետնամի մարտիկներն ու պարտիզանները հաջող գործողություններ վարեցին Դոյինե եղեգնուտում։ Հյուսիսային Վյետնամում ժողովրդական բանակի զորամասերի ճնշման տակ ֆրանսիական զորքերը ստիպված եղան էվակուացնել Նա-Սամ ռազմական կարևորագույն բազան։

Փորձելով այս տարվա անհաջողությունների համար ռևանշ կատարել, ֆրանսիական հրամանատարությունը Հնդկաչինում գտնվող գլխավոր կոմիսար գեներալ Նավարրի առաջարկությամբ, նոյեմբերի 15-ին հարձակման անցավ Հյուսիսային և Կենտրոնական Վյետնամի միջև ընկած լեռնային շրջանում։ Սակայն այդ օպերացիան ևս, որը ծածկագրված էր «Որոր» անունով և լայնորեն ռեկլամվում էր, ձախողվեց սկսվելուց ուղիղ 20 օր հետո։ Հարձակման սկզբում մի փոքր առաջ շարժվելուց հետո ֆրանսիական զորքերը նահանջեցին ելման դիրքերը, կոր

դաշտում թողնելով համարյա 4 հազար սպանված։

Վյետնամի ժողովրդական բանակը հաղթանակ է տանում, որովհետև նա մղում է արդարացի, ազատագրական պատերազմ։ Վայելելով իր ժողովրդի օգնությունը, նա աճել, լուրջ ուժ է դարձել, զինվել է թշնամուց գրավված կամ ռեսպուբլիկայի գործարաններում ու արհեստանոցներում պատրաստված ժամանակակից սպառազինությամբ։ Ժողովրդական բանակը լավ վարժեցված և կարգապահ բանակ է։ Իրենցից մեծ ուժ են ներկայացնում Վյետնամի պարտիզանները, որոնք ժողովրդական բանակի հետ հանդես են գալիս սերտ փոխգործողությամբ։

Ռեսպուբլիկայի զինված ուժերը սերտորեն կապված են թիկունքի հետ։ Ռազմաճակատը և թիկունքը միասնական են։ Թիկունքի քաղաքական, տնտեսական և կուլտուրական հաջողությունները Վյետնամի մարտիկներին ոգեշնչում են նորանոր հաղթանակների։ Իր բանակի յուրաքանչյուր հաջողությանը բնակչությունը պատասխանում է արտադրական նոր նվաճումներով։

Վյետնամի ժողովրդի հաջողությունների հիմքը դա Վյետնամում նոր տիպի պետու-



թյան՝ ժողովրդական դեմոկրատիայի պետության ամրապնդումն է։

Ելնելով ներկայումս Վյետնամի ժողովրդի առջև դրված առաջնահերթ խնդրից՝ իմպերիալիստական ագրեսորներին վռնդելու խնդրից, բանվոր դասակարգը և նրա ավանգարդ Վյետնամի աշխատավորների պարտիան ու ժողովրդական կառավարությունը անդուլ կերպով աշխատում են համախմբել ժողովրդի ուժերը, ամրապնդել Ազգային միասնական ճակատը՝ Լիեն-Վյետը։ Այս ասպարեզում խոշոր հաջողություններ է ձեռք բերված։ Այժմ Լիեն-Վյետը իր շարքերում համախմբում է 12 միլիոն մարդ՝ ռեսպուբլիկայի բնակչության կեսից ավելին։ Ամրապնդվող միասնությունը նպաստում է երկրի էկոնոմիկայի և Վյետնամի ժողովրդի կուլտուրայի զարգացմանը։

Վյետնամի համար պատմական նշանակություն ունեն ագրարային վերափոխությունները։ Գյուղացիությունը կազմում է ամբողջ երկրի բնակչության 90 տոկոսը։ Գյուղացիները ժողովրդական բանակի ճնշող մեծամասնությունն են կազմում։ Նրանց բարեկեցությունից է կախված բանակի և ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության մատակարարումը։ Աստիճանաբար իրականաց-

վում է «Հողը՝ գյուղացիներին» լոզունգը։ Գյուղացիների մեջ կատարվում է այն հողերի բաժանում, որն առաջ պատկանում էր ֆրանսիական գաղութարարներին և ժողովրդի դավաճաններին, ինչպես նաև համայնքների հողերը։ Իջնում է նաև հողի վարձակալական գինը. գյուղացիներին տրամադրվում են հանքային պարարտանյութեր, տեսակավոր սերմացու, անասուն, գյուղատնտեսական ինվենտար։ Հողային ռեֆորմի վերաբերյալ օրենքները կալվածատերերի կողմից կատարելու նկատմամբ վերահսկողություն սահմանելու համար, գյուղերում ստեղծվում են գյուղացիական միություններ։

Վյետնամի ժողովուրդը լուրջ հաջողությունների հասավ ազգային արդյունաբերության զարգացման ուղղությամբ, որն աշխատում է գլխավորապես ռազմաճակատի կարիքների համար։ Վերականգնվել կամ վերականգնվում են ֆրանսիական օկուպանտների կողմից ավերված ձեռնարկությունները։ Կառուցված են թղթի, տեքստիլի, օճառի, յուղերի և այլ ֆաբրիկաներ. ֆոսֆորի գործարաններ և նույնիսկ դոմենյան ոչ մեծ վառարաններ։ Աճում է բանվորների աշխատանքի արտադրողականությունը։

Արդյունաբերության և գյուղատնտեսու-



թյան զարգացումը անհնարին կլիներ առանց ֆինանսական սիստեմի ամրապնդման։ Երկրում կազմակերպված է Ազգային բանկ։

Ժողովրդական կառավարությունը լուրջ հաղթանակներ է տարել նաև կուլտուրական շինարարության ասպարեզում։ Երկրում մտցված է պարտադիր տարրական ուսուցում։ Բացված են հազարավոր տարրական դպրոցներ և մի քանի բարձրագույն ուսումնական հաստատություններ։

Որպեսզի արդարացնեն Վյետնամում սկսած ագրեսիան, իմպերիալիստները այս տարվա ամռանը հայտարարեցին, թե անկախություն են տալիս իրենց դրածո Բաո Դայի կառավարությանը։ Այժմ նրանք Վյետնամի «անկախությունը» պաշտպանելու պատրվակով ավերում են Վյետնամի քաղաքներն ու գյուղերը։ Այդպիսի մանևրներով Վյետնամի ժողովրդի երդվյալ թշնամիները ցանկանում են իրենց ցույց տալ որպես նրա բարեկամներ։

Վյետնամի ժողովրդի հետ միջազգային համերաշխության Օրը աշխարհի ժողովուրդները կրկին ամբողջ ձայնով պահանջում են դադարեցնել պատերազմական գործողությունները Վյետնամում և հաշտություն կնքել։





# ԱԳԻՏԱՏՈՐ Ա. ԴԱՎԹՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ ԼԱՅՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՌԱՏՈՒԹՅՈՒՆ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ս. ՄԱԼԽԱՍՅԱՆ

Շահումյանի շրջանի Լենինի անվան Մետաքսագործվածքային ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի ղեկավար

*Ունկնդիրների հետ սիստեմատիկաբար բովանդակալից, նպատակասլաց և հետաքրքիր ագիտացիոն զրույց է ունենում Շահումյանի շրջանի Լենինի անվան Մետաքսագործվածքային ֆաբրիկայի գործող ցեխի ագիտատոր Ա. Դավթյանը։ Նա օրերս գործող ցեխի բանվորների համար կազմակերպեց ագիտացիոն զրույց՝ «Լայն սպառման արդյունաբերական ապրանքների արտադրությունն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու մասին» ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշման վերաբերյալ, այն սերտորեն կապելով ֆաբրիկա-*



*յի առջև դրված արտադրական խնդիրների կատարման հետ։*

*Հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը,— ասաց ագիտատորը,—մշտապես հոգ են տանում, որպեսզի մեր երկրի աշխատավորները լի ու լի բավարարվեն բարեկեցիկ կյանքի համար բոլոր տեսակի անհրաժեշտ ապրանքներով։ Այդ նպատակով, շարունակում է ագիտատորը, պարտիան և կառավարությունը ձեռնարկել են խոշոր միջոցառումներ, որպեսզի թեթև արդյունաբերության զարգացումը ծավալվի այնպիսի մեծ մասշտաբներով, որ լայն սպառման արդյունաբերական ապրանքների արտադրության 5-րդ հնգամյակի առաջադրանքները կատարվեն ավելի շուտ։*

*Պարտիայի և կառավարության որոշման հիմնական նպատակը հակիրճ շարադրելուց հետո, նա կոնկրետ թվական տվյալներ է բերում, թե մոտակա երկու—երեք տարում ինչպիսի և ինչ քանակով լայն սպառման ապրանքներ է արտադրվելու։ Նա համեմատում է մինչպատերազմյան 1940 թվականի մակարդակը 1953 թվականի հետ։ Այս տարի մեր երկրի թեթև արդյունաբերության ձեռնարկությունները արտադրեցին ավելի քան 5 միլիարդ 300 միլիոն մետր բամբակե*

գործվածքներ, կամ 34 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, ավելի քան 200 միլիոն մետր բրդե գործվածքներ, կամ մոտավորապես 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, 400 միլիոն մետր մետաքսեղեն, կամ ավելի քան 5 անգամ շատ, քան 1940 թվականին և այլն։

Ունկնդիրներին այս տվյալները հաղորդելուց հետո, ագիտատորը սկսում է նրանց պատմել, որ առաջիկա տարում արտադրվելու է 5 միլիարդ 549 միլիոն մետր, իսկ 1955 թվականին՝ 6 միլիարդ 267 միլիոն մետր բամբակե գործվածքներ, 1954 թվականին արտադրվելու է 242 միլիոն մետր, իսկ 1955 թվին՝ 271 միլիոն մետր բրդե գործվածքներ։ Նույն ժամանակաշրջանում, այսինքն 1954—1955 թվականներին արտադրվելու է 1 միլիարդ 77 միլիոն մետր մետաքսե գործվածքներ, որից 573 միլիոն մետրը՝ 1955 թվականին։ 1956 թվականին, 1950 թվականի համեմատությամբ մետաքսե գործվածքների արտադրությունը աճելու է 5,2 անգամ, տրիկոտաժե սպիտակեղենինը՝ 2,8 անգամ, բրդե գործվածքեղենինը՝ 2 անգամ և այլն։

Պարտիան և կառավարությունը միաժամանակ պահանջում են թողարկել դիմացկուն, գեղեցիկ ձևավորված, բարձրորակ ապրանք-



ներ, որոնք իրենց գրավչությամբ ու արտաքին տեսքով բավարարեն սովետական մարդու աճող կուլտուրական պահանջները։

Այնուհետև ագիտատորը պատմում է ժողովրդական սպառման առարկաների արտադրությունն ավելացնելու կապակցությամբ այն հսկայական աշխատանքի մասին, որ կատարվում է Հայկական ՍՍՌ-ում։

Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ,— ասում է ագիտատորը,— Սովետական Հայաստանը դարձել է առաջավոր ինդուստրիալ, կոլտնտեսային գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկող կուլտուրայի երկիր։ Հայաստանում ստեղծվել են արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, որոնք անծանոթ էին եղել նախասովետական Հայաստանին։ Ռեսպուբլիկայում չտեսնված զարգացման է հասել թեթև ու սննդի արդյունաբերությունը։ 1940 թվականի համեմատությամբ 1953 թվականին բամբակե գործվածքների արտադրությունը աճել է 191,8 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 17 անգամ։

1954—1955 թվականներին ռեսպուբլիկայում կենցաղային սպասարկման ձեռնար-

կուլթյումների թիվը կավելանա 2—3 անգամ։ Նախատեսվում է կառուցել մանճակալների, մետաղյա ամանների արտադրության գործարան, երաժշտական գործիքների, կահույքի, հայելու, գալանտերիայի նոր ֆաբրիկաներ։ Առաջիկա երկու—երեք տարում խիստ կերպով ավելանալու է նաև հագուստեղենի, կոշկեղենի, մսեղենի, յուղի, կաթնեղենի և այլ ապրանքների արտադրությունը։ Ագիտատորը իր զրույցի վերջին մասում խոսեց ֆաբրիկայի առջև դրված առաջնահերթ խնդիրների մասին։ Մեր ֆաբրիկան,— ասաց նա,— ռեսպուբլիկայի խոշոր նորակառույցներից է, որը հագեցված է հայրենական նորագույն կատարելագործված տեխնիկայով։ Ֆաբրիկան 1954 թվականին պետք է թողարկի 3 միլիոն 600 հազար մետր մետաքսե գործվածքներ, իսկ 1955 թվականին՝ 5 միլիոն մետր մետաքսե գործվածք։

Ֆաբրիկայի կոլեկտիվի պատվի գործն է՝ կարճ ժամանակում իրացնել մետաքսե գործվածքի այնպիսի նոր տեսակներ, ինչպիսին են «մոսկրեպը», «կրեպժորժետը», «կրեպհոկտեմբերը» և նուրբ մետաքսե գործվածքների այլ տեսակներ։ Նախատեսվում է ֆաբրիկայի գործող հաստոցների թիվն ավելացնել 700-ով։ Դրա հետ միասին,



լուրջ կերպով պետք է բարձրացվի թողարկվող արտադրանքի որակը, հատկապես դրոշման աշխատանքը, որպեսզի կտորը լինի գեղեցիկ, դիմացկուն, արտաքին տեսքով լավ ձևավորված։ Մեր հարազատ պարտիան և Սովետական կառավարությունը խոշոր միջոցներ են նախատեսել բանվորների կուլտ-կենցաղային կարիքները բավարարելու համար։ Շրջանում պետք է կառուցվեն 12 միլիոն ռուբլու արժողությամբ նոր, գեղեցիկ բնակելի տներ, մսուր, մանկապարտեզ, ակումբ, կաֆե-ռեստորան, բաղնիք և այլն։

Ագիտատորի զրույցին ակտիվ կերպով մասնակցեցին նաև ունկնդիրները։ Առաջավոր ջուլհակուհի Ի. Ցարմանյանն ասաց,— աշխատավորների նկատմամբ պարտիայի և կառավարության հայրական հոգատարությունը նոր ուժ, նոր եռանդ է տալիս արտադրական պլանները գերազանց կատարելու համար։ Խոստանում եմ պլաններս կատարել 150 տոկոսով և տալ միայն առաջին տեսակի մետաքսե գործվածք։ Նա միաժամանակ պատմեց, թե ինչպես ինքը և իր մերձավորները արտասահմանում կիսամուրացիկ ու թշվառ կյանք են վարել և միայն

սովետական Հայրենիքում ապրում են մարդավայել, ուրախ ու երջանիկ։

— Ժողովրդի նկատմամբ պարտիայի ու կառավարության հոգատարությանը,— ասաց ենթավարպետ Ա. Կորկոտիկյանը,— մենք կպատասխանենք նվիրված աշխատանքով։ Ես սպասարկում եմ 18 գործող մեքենա, պարտավորվում եմ այսուհետև սպասարկել 24 գործող մեքենա և չտալ ոչ մի պարապուրդ։ Մեքենաներն սպասարկել այնպես, որ բրիգադան պլանները կատարի 130—150 տոկոսով և տա 20—30 տոկոսով հումքի խնայողություն։

Ագիտացիոն զրույցին ակտիվ կերպով մասնակցեցին նաև մյուս ունկնդիրները։ Զրույցն անցավ աշխույժ և հետաքրքիր։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԻՆՉ Է ՏԱԼԻՍ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

(Թվեր և փաստեր)

Մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու գործում վիթխարի աշխատանք են կատարում սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունները։ Ամեն տարի կոլտնտեսություններն ու սովխոզները պետությունից ստանում են տեխնիկապես բարձր կատարելության հասած հազարավոր գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի կողմից առաջադրված խնդիրները պատվով են կատարում նաև Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունները։

Երևանի «Ավտոդետալ» գործարանի կոլեկտիվը ընթացիկ տարում յուրացնելով նոր տիպի տրակտորային մասերի տեխնոլոգիան, հաջող կերպով սկսել

է նրանց մասսայական արտադրությունը։ Անցած 11 ամիսների ընթացքում գործարանը արտադրել և գյուղատնտեսական մեքենաների վերանորոգման ձեռնարկություններին ու ՄՏԿ-ներին է հանձնել 11 տիպի ավելի քան 125 հազար դետալ։ Գործարանի արտադրանքը օգտագործում են ինչպես մեր ռեսպուբլիկայի, այնպես էլ եղբայրական ռեսպուբլիկաների մեքենա-տրակտորային կայանները։

✪ Երևանի էլեկտրամեխանիկական գործարանի բանվորները ու ինժեներա-տեխնիկական աշխատողները հաջողությամբ կատարում են գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման համար զանազան պատվերները։ Այժմ ռեսպուբլիկայի գյուղերը ստանում են մեծ քանակությամբ էլեկտրասարքավորումներ, ինչպես, օրինակ, մոնտաժված բաշխիչ և հիմնական տախտակներ, ապահովիչներ, անջատիչներ և այլն։ Գործարանի կոլեկտիվը տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ։

✪ Գյուղատնտեսական արտադրության պրոցեսների էլեկտրիֆիկացման գործում աչքի ընկնող աշխատանք է կատարում նաև Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը։ Ընթացիկ տարում գործարանը միայն ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և մեքենա-տրակտորային կայանների համար արտադրել է 20 տրանսֆորմատոր, 1 էլեկտրակայանի սարքավորում և 1 գեներատոր։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին և սով-



խոզներին լուրջ օգնություն է ցույց տալիս Երևանի կոմպրեսորների գործարանը։ Անցած 11 ամիսների ընթացքում գործարանը արտադրել և կոլտնտեսություններին է հանձնել մի քանի հարյուր կոմպրեսոր։

✪ Երևանի փոքր հիդրոտուրբինների գործարանը արտադրական նոր հաջողություններով է արձագանքում ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներին։ Գործարանը անցած 10 ամիսների ընթացքում երկրի կոլտնտեսություններին, սովխոզներին, մեքենա-տրակտորային կայաններին է հանձնել հազարավոր բարձր որակի և տարբեր կարողությունների ջրային պոմպեր։ Այդ մեխանիզմների շնորհիվ զգալիորեն կբարելավվի գյուղատնտեսության տարբեր բնագավառների ջրամատակարարման գործը։

✪ Անասնապահական ֆերմաներում, ինչպես նաև գյուղատնտեսության այլ բնագավառներում անհրաժեշտ կառուցումներն իրականացնելու գործում զգալի աշխատանք է կատարում ռեսպուբլիկայի Շինանյութերի արդյունաբերության մինիստրության Արարատի ցեմենտի գործարանի կոլեկտիվը։ Գործարանը ընթացիկ տարվա ընթացքում միայն ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին, սովխոզներին և մեքենա-տրակտորային կայաններին է ուղարկել տասնյակ հազար տոննա բարձրորակ ցեմենտ։ Նույն մինիստրության Արարատի Ազբոշիֆերի գործարանը ընթացիկ տարվա 11 ամիսների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին է հանձնել հարյուր հազարա-

վոր ագրոշիֆերի թիթեղներ, որը էժան ու բարձրորակ շինարարական նյութ է ծածկի համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումների ոգով են վերակառուցել իրենց աշխատանքները Հայկական ՍՍՌ Տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները։ Մինիստրության 32 տեղարդկոմբինատներ կատարում են նաև գյուղատնտեսության համար պատվերներ։ Անցած 10 ամիսների ընթացքում միայն Դիլիջանի, Կրասնոսելսկի, Շամշադինի և Իջևանի տեղարդկոմբինատները ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների համար արտադրել են 1.270 հատ անիվ, 25 հազար անիվի մաս, 38 սայլ և այլն։

Այս տարի Տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարիքների համար արտադրելու են 80 հազար ջերմոցային շրջափեղկ և 10 հազար տակառ։

Կոլտնտեսություններին և սովխոզներին խոշոր օգնություն են ցույց տալիս ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները։ Կիրովականի քիմիական կոմբինատը ամեն տարի հազարավոր տոննա քիմիական պարարտանյութ է թողարկում գյուղատնտեսության կարիքների համար։ Կոմբինատը միայն այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին տվեց տասնյակ հազար տոննա սելիտրա, մի քանի հազար տոննա ցիանամիդ և այլ տեսակի պարարտանյութեր։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

## ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ

Ժողովրդական կրթության գործում վիթխարի հաջողությունների է հասել եղբայրական Ադրբեջանը։ Սովետական իշխանության տարիներին անճանաչելի կերպով փոխվել է նրա կուլտուրական դեմքը։ Նախահեղափոխական շրջանում ազգաբնակչության միայն 3 տոկոսն էր գրագետ, իսկ այժմ Սովետական Ադրբեջանը դարձել է համատարած գրագիտության երկիր։

Եթե 1914—1915 թվականներին Ադրբեջանի լուսավորության բյուջեն կազմում էր ընդամենը մեկ միլիոն 700 հազար ռուբլի, ապա այն Սովետական Ադրբեջանում միայն 1952 թվականին կազմեց 800 միլիոն ռուբլի։

Այժմ ռեսպուբլիկայում գործում են 1.630 տարրական, 1.926 յոթնամյա, 695 միջնակարգ դպրոցներ։ Միայն վերջին 3 տարիների ընթացքում բացվել են 250 յոթնամյա և միջնակարգ դպրոցներ,

ուր սովորում են 651 հազար աշակերտ, այսինքն՝ 9 անգամ ավելի, քան նախասովետական Ադրբեջանում։

1949 թվականից ռեսպուբլիկայի բոլոր վայրերում իրականացվում է ընդհանուր պարտադիր յոթնամյա ուսուցում։ 5—10-րդ դասարաններում 1952 թվականի տվյալներով սովորում էին 250 հազար աշակերտ։

Ադրբեջանում Սովետական իշխանության տարիներին ուժեղ թափով աճեց ոչ միայն հանրակրթական դպրոցների, այլև տեխնիկումների ցանցը։ Բացվեցին բժշկական, մանկավարժական, հողաշինարարական, բամբակագործական, տրանսպորտային, շինարարական, գեղարվեստական, թատերական և այլ տեխնիկումներ, որոնք երկրին տալիս են տարբեր մասնագիտությամբ հազարավոր կադրեր։

Սովետական Ադրբեջանը մեծ հաջողությունների է հասել բարձրագույն կրթության զարգացման բնագավառում։ Հաջողությամբ գործում են գյուղատնտեսական, պոլիտեխնիկական, բժշկական, մանկավարժական և մյուս ինստիտուտները, Պետական համալսարանը։ ԲՈՒՀ-երի թիվը հասնում է 20-ի, ուր սովորում են 36 հազար ուսանող։

Բարձրագույն այդ հաստատությունները անցած 10 տարիների ընթացքում երկրին տվել են 75 հազար ինժեներներ, ուսուցիչներ, բժիշկներ, գյուղատնտեսներ և այլ մասնագետներ։



Ռեսպուբլիկայում բուռն թափով առաջ է գնում մանկավարժության բնագավառում տարվող գիտա-հետազոտական աշխատանքը։ Միայն վերջին տարիների ընթացքում մանկավարժական գիտա-հետազոտական ինստիտուտների և մանկավարժական ԲՈՒՀ-երի 30 դասախոսներ ու աշխատողներ ստացել են մանկավարժական գիտությունների թեկնածուական և դոկտորական գիտական աստիճան։

Սովետական Ադրբեջանում հավասար կերպով հոգ է տարվում նաև այնտեղ բնակվող մյուս ազգությունների՝ ռուսների, հայերի, վրացիների երեխաների կրթության ու դաստիարակության մասին։ Նրանց համար նույնպես ստեղծվել է մայրենի լեզվով դպրոցների լայն ցանց։

Գործող դպրոցների ընդհանուր թվից դասավանդումը տարվում է ռուսերեն լեզվով՝ 83 տարրական, 145 յոթնամյա, 140 միջնակարգ դպրոցներում, հայերեն լեզվով՝ 61 տարրական, 157 յոթնամյա և 95 միջնակարգ դպրոցներում, վրացերեն լեզվով՝ 6 տարրական, 6 յոթնամյա և 5 միջնակարգ դպրոցներում։

## ՎՐԱՑԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ, ինչպես ՍՍՌՄ եղբայրական մյուս ռեսպուբլիկաները, այնպես էլ Վրացական ՍՍՌ-ն նշանակալից

*հաջողությունների է հասել ժողովրդական կրթության ասպարեզում։ Սովետական Վրաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր։ Ռեսպուբլիկան ծածկված է միջնակարգ և բարձրագույն դպրոցների, ԲՈՒՀ-երի, գիտա-հետազոտական հիմնարկների խիտ ցանցով։*

✪ *Միայն այս տարի ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության կարիքների համար պետական բյուջեից ծախսվել է 763 միլիոն 936 հազար ռուբլի։*

✪ *Այս տարվա տվյալներով ռեսպուբլիկայում գործում են 4 հազար 237 դպրոց, ուր սովորում են ավելի քան 682 հազար աշակերտ։ Միայն առաջին դասարաններում ընդգրկված են 59 հազար 557 դպրոցական։ Այդ թիվը 9 հազար 557-ով գերազանցում է անցյալ տարվան։ Այս ուսումնական տարում ռեսպուբլիկայի քաղաքներում, ավաններում և գյուղերում բացվեց 24 նոր տարրական դպրոց։*

✪ *Գնալով ռեսպուբլիկայում բարձրանում է ուսման որակը։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ 1953 թվականին ռեսպուբլիկայի միջնակարգ դպրոցների 13 հազար 416 շրջանավարտներից 1.802 հոգի արժանացան ոսկե և արծաթե մեդալների։*

✪ *Ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք է կատարվում դպրոցները բարձրորակ մանկավարժական կադրերով ապահովելու ուղղությամբ։ 1952—1953 ուսումնական տարում Վրաստանի դպրոցների ուսուցչական կոլեկտիվները համալրվեցին ավելի քան 2 հազար երիտասարդ մանկավարժներով։*

---

ՊԱՏԱՍԽԱՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

# ԹՅՈՒՐՔԱԿԱՆ ՌԵԱԿՑԻԱՅԻ ՈՏՆՁԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՐԿՐԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐՈՂ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ԴԵՄ

Երևանի Կոնսերվի գործարանի մրգի ցեխի ագիտատոր Ս. Ավագյանը դիմել է խմբագրությանը հետևյալ հարցով. «Ինչու՞ են դատում դեմոկրատ գործիչներին Թյուրքիայում»: Տպագրում ենք պատասխան այդ հարցին:

*Ժամանակակից Թյուրքիան հանդիսանում է ամերիկյան իմպերիալիզմի կիսագաղութը և ռազմական պլացդարմը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի դեմ նախապատրաստվող նոր համաշխարհային պատերազմի համար։ Ամերիկյան իմպերիալիստները Թյուրքիան ներգրավելով ագրեսիվ ատլանտյան բլոկի մեջ, այժմ ձգտում են օգտագործել նրան որպես հիմնական կորիզ Միջին ու Մերձավոր Արևելքի երկրներից ռազմական նոր բլոկ ստեղծելու համար։ Ամերիկյան իմպերիալիստները արտակարգ նշանակություն են տալիս Թյուրքիայի տերիտորիայում ռազմա-ծովային և ռազմա-օդային բազաների կառուցմանն ու վերակառուցմանը։*

Թուրքիայի վերածումը ամերիկյան իմպերիալիզմի ռազմական բազայի և երկրում սպառազինությունների մրցավազքը ծանր է անդրադառնում աշխատավոր մասսաների նյութական դրության վրա։ Թուրքիայում կա 3 միլիոնից ավելի գործազուրկ և կիսագործազուրկ։ Թուրքական բանվորները ենթարկվում են գազանային շահագործման։ Աշխատանքային օրը հասնում է 12—16 ժամի, իսկ բանվորի վաստակը չի բավականացնում ընտանիքի նույնիսկ կերակրման համար։ Անչափ ծանր է թյուրք գյուղացու վիճակը։ Թուրքիայում ապրող 16 միլիոն գյուղացիներից 6 միլիոնը հողազուրկ է։ Ինչպես գրում է «Յակմուրվե Թոփրակ» ժուռնալը, Թուրքիայում կան կալվածատերեր, որոնցից յուրաքանչյուրին պատկանում են 30—40 գյուղ։ Կալվածատերերը իրենց պատկանող գյուղերում հողի հետ միասին աճուրդով վաճառում են գյուղացիներին։ Երկրում արձանագրված են աղջիկներին ու կանանց ոչ միայն վաճառելու, այլև նրանց որսի շների հետ փոխանակելու փաստեր։

Ճշմարտությունը Թուրքիայի մասին այն է, որ Թուրքական ռեակցիոն կառավարությունը վաճառում է ազգային անկախության և ազգային սուվերենության շահերը ամերիկյան մոնոպոլիաներին դոլարով։ Ամերիկյան իմպերիալիստները Թուրքիային դարձրել են իրենց գերին։ Անդրովկիանոսյան իմպերիալիստների հանցավոր պլանների իրականացման



նպատակով Թուրքիայում ամերիկյան պրոպագանդան հենվում է այն անհեթեթ թեզի վրա, թե իբր Թուրքիային «կոմունիստական վտանգ» է սպառնում։ Թուրքական ռեակցիոն կառավարողները կատարելով ամերիկյան տիրոջ կամքը, ուժեղ պայքար են սկսել դեմոկրատական գործիչների դեմ։ Վաճառված մոլլաները իմպերիալիստների թելադրանքով այժմ հետևյալ քարոզն են կարդում. «Նրանք, ովքեր դեմ են կառավարությանը՝ կընկնեն դժոխք։ Ով ըսպանի մեկ կոմունիստի, նա կընկնի դրախտ։ Ով ըսպանի երկու կոմունիստի, կարող է իր հետ վերցնել կնոջը, ով սպանի երեք կոմունիստի՝ կարող է իր հետ վերցնել դրախտում ամբողջ ընտանիքը, իսկ եթե որևէ մեկը սպանի երեքից ավելի կոմունիստների, նա կգնա դրախտ ում հետ որ ցանկանա»։

Թուրքական ռեակցիոն կառավարությունը դաժան դատաստան է տեսնում երկրի անկախության և խաղաղության համար պայքարող մարտիկների հետ։

Խաղաղության և ազգային անկախության համար պայքարողների դեմ թյուրքական ռեակցիայի նողկալի ոտնձգության օրինակ է Ստամբուլում տեղի ունեցող 167 պրոգրեսիվ գործիչների դատավարությունը։ Թուրքական թերթերի հաղորդագրությամբ 167 գործիչներն էլ մեղադրվում են «գոյություն ունեցող կարգը տապալելու» և «պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու» փորձերի համար։

Ովքե՞ր են մեղադրյալները։ Ստամբուլի «Վաթան»

Թերթը գրում է, որ 167 մեղադրյալներից 156-ը տղամարդ են և 11-ը՝ կին։ Մեղադրյալների թվում կան թյուրք ժողովրդի բոլոր խավերի ներկայացուցիչները։ Նրանց մեջ են 34 ուսանող, 43 բանվոր, 3 բժիշկ, 7 արտիստ և երաժիշտ, 6 դասատու, 35 չինովնիկ, 3 թարգմանիչ, 2 զինվորական, 2 ֆաբրիկանտ-վաճառական, 3 փաստաբան, 1 արհեստավոր։ Մեղադրյալների մեջ են թյուրքեր, քրդեր, լազեր, չերքեզներ։ Թյուրքական ռեակցիոն դատարանի առջև կանգնած է հայտնի կին-գրող Սուաթ Դերվիշի ամուսին Ռեշատ Բարանները, 1946 թվականին արգելված «բանվորների և գյուղացիների պարտիայի» կազմակերպիչ Շեֆիկ Հյուսնյուն և այլ հասարակական պրոգրեսիվ գործիչներ։

Ինչպես հայտնի է, «բանվորների և գյուղացիների պարտիայի» արգելումից անմիջապես հետո ձերբակալվել էր Շեֆիկ Հյուսնյուն և դատապարտվել հինգ տարվա բանտարկության։ Այժմ նա նորից նստած է մեղադրյալների աթոռին։ Դատարանի առաջ են կանգնած նաև անցյալում «բանվորների և գյուղացիների պարտիայի» գործով դատապարտված մի քանի մարդ։

167 թյուրք հայրենասերների դատավարությունը նախապատրաստվում էր համարյա 2 տարվա ընթացքում։ Այժմյան մեղադրյալների մեծ մասը ձերբակալվել էին դեռևս 1951 թվականին։ Ձերբակալվածները Ստամբուլի զնդաններում ենթարկվում էին դաժան խոշտանգումների և տանջանքների։ Դատարա-



նում մեղադրյալ Քեմալ Երգինի հայտարարությունից պարզվել է, որ բանտում գտնվելու ժամանակ խոշտանգումների պատճառով 15 կալանավոր խելագարվել են։

Հայտնի է, որ թյուրք հայրենասերների դատավարությունը տեղի է ունենում դռնփակ, նրանց գործը քննվում է զինվորական տրիբունալի կողմից։ Դատավարության սկզբում մեղադրյալները բողոք հայտնեցին իրենց գործը զինվորական տրիբունալի կողմից քննվելու դեմ, նրանք անվստահություն հայտնեցին դատարանի կազմի նկատմամբ, որը ենթարկվում է զինվորական իշխանություններին։

Մեկնաբանելով թյուրք պրոգրեսիվ գործիչների դատավարությունը, Թյուրքական ռեակցիոն թերթերը ցուցաբերում են կասկածելի իրազեկություն այն մասին, որ գոյություն ունի «կապ մեղադրյալների և կոմինֆորմի միջև»։ Պարզ է, որ թյուրք պրոգրեսիվ գործիչներին ներկայացված մեղադրանքը անհիմն է։ Նախատեսելով դատավարության հնարավոր տապալումը, Թյուրքական իշխանությունները 1951 թվականի դեկտեմբերին շտապ կարգով վերանայեցին քրեական օրենսգրքի 151-րդ հոդվածը, որի հիման վրա դատի են ենթարկվել 167 գործիչները։ «Ուղղումից» հետո Թյուրքական քրեական օրենսգրքի այդ հոդվածը մահապատիժ է սպառնում գլխավոր մեղադրյալներին և երկարատև բանտարկություն՝ նրանց գործակիցներին։

Ստամբուլի դատավարությունում թյուրք հայրենա-

ներներին դատում են հակակոմունիստական նոր օրենքի հիման վրա։ Հակակոմունիստական այդ նոր օրենքը կոչվում է Ճեքեր Մոչանի օրենք։ Այդ օրենքի մոլի պաշտպանը, Թյուրքիայի մեջլիսի դեպուտատ Մոչանն ակտիվ կերպով ագիտացիա է տանում հակակոմունիստական բոլոր տեսակի միջոցառումների օգտին։ Թյուրքական խոշոր հողատեր և անտառարդյունաբերող Ճեքեր Մոչանն հանդիսանում է ամերիկյան հետախուզության գործակալ և պատահական չէ, որ նրա անվամբ կոչվող հակակոմունիստական այդ տխրահռչակ օրենքի նախագիծը պատրաստված է եղել Ամերիկայի Միացյալ Նահանգներում և իրականում կազմվել է վաշինգտոնյան մի «պրոֆեսորի» կողմից։

Թյուրք պրոգրեսիվ գործիչների Ստամբուլի դատավարությունը անսովոր երևույթ չէ ժամանակակից Թյուրքիայում։ Թյուրքիայի կառավարող շրջանները երկիրը կապելով հյուսիս-ատլանտյան դաշինքի ագրեսիվ պլանների հետ, բռնել են դեմոկրատական ազատությունների վերջին մնացորդները խեղդելու ուղին։

Չնայած թյուրքական ռեակցիայի ոտնձգություններին ու բոլոր գազանություններին խաղաղության, դեմոկրատիայի և երկրի անկախության համար պայքարող մարտիկների նկատմամբ, թյուրք աշխատավորների մեջ աճում է այն գիտակցությունը, որ անհրաժեշտ է փրկել երկիրը ամերիկյան իմպերիալիստների կողմից ստրկացվելու վտանգից։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

---

# Ց Ա Ն Կ

## 1953 ԹՎԱԿԱՆԻՆ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

### ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

*Թեմաներ, պլաններ և գրականություն ագիտատորի զրույցների համար №№ 1, 3, 5, 7, 8, 10, 12, 14, 15, 17, 19, 21, 23։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 24 1953 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

ՎՖ 05749 Պատվեր 1183 Տիրաժ 9000

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ., գինը 50 կոպ.։